# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ




ՓԵՏՐՎԱՐ

3

1964

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿП Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։

## СОДЕРЖАНИЕ:



АДРЕС РЕДАКЦИИ — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 3
ՓԵՏՐՎԱՐ
1964

ՀԿП Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

*ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ*

# ԻՆՉԻ՞ ՀԱՄԱՐ Է ՊԱՅՔԱՐԵԼՈՒ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ 1964—1965 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

## 2. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*Հանրագումարի բերելով գյուղատնտեսության բնագավառում անցած երկու տարում ռեսպուբլիկայի աշխատավորների ձեռք բերած հաջողությունները ու նըվաճումները, Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը նշեց, թե ինչ ուղղությամբ է զարգանալու մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը առաջիկա տարիներին և այդ կապակցությամբ ինչ է արվելու։*

*Համագումարն ընդգծեց, որ տեխնիկական կուլտուրաների, խաղողի և պտուղների արտադրության հետագա զարգացման հետ մեկտեղ. հարկավոր է մեծ ուշադրություն նվիրել հացահատիկի, կերային կուլտուրաների, բանջարեղենի և կարտոֆիլի արտադրությունն ավելացնելուն։ Սակայն այդ խնդիրն անկարելի է լուծել առանց գյուղատնտեսության մեքենայացման ու քիմիացման, առանց ոռոգման ցանցի ընդլայնման։ Խնդիր է դրվում գյուղատնտեսության քիմիացումն ուժեղացնելու համար արմատապես բարելավել ագրոքիմիական ծառայությունը կոլտնտեսություններում ու սովխոզներում, արտադրական վարչություններում, ինչպես նաև գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրությունում։ Ինչպես*

հայտնի է, գյուղատնտեսության քիմիացման ուժեղացումից և հանքային պարարտանյութերի ռացիոնալ օգտագործումից, մոտավոր հաշվումներով, մեկ հեկտարի բերքի հավելումը կապահովվի հետևյալ չափերով. աշնանացան ցորենինը՝ մինչև 10 ցենտներով, գարնանացան ցորենինը՝ մինչև 8 ցենտներով, հատիկացու եգիպտացորենինը՝ մինչև 20 ցենտներով, սիլոսացու եգիպտացորենինը՝ մինչև 100 ցենտներով, բանջարանոցային կուլտուրաներինը՝ մինչև 100 ցենտներով, առվույտինը՝ մինչև 80 ցենտներով և այլն։

Ներկայումս է՛լ ավելի մեծ նշանակություն են ստանում ոռոգելի հողերի ընդլայնման և ճիշտ օգտագործման հարցերը։ Այս առումով էլ 1964—1965 թվականներին մեծ թափ է ստանալու ջրատնտեսական շինարարությունը։ Այդ ժամանակամիջոցում ավարտվելու է Ապարանի և Մանթաշի ջրամբարների, Նոյեմբերյանի, Գետափ—Աղավնաձորի, Այրում—Ճոճկանի, Կապսի, Գյուլիբուլաղի, Լալագյուղ—Ուզունթալայի և այլ ջրհան կայանների շինարարությունը։ Բացի դրանից, մոտ




ժամանակներս ծավալվելու են Արևշատի և Մխչյանի հզոր ջրհան կայանների շինարարության աշխատանքները և կշարունակվի Արզնի—Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթի շինարարությունը։

Ընկ. Յա. Ն. Զարոբյանը իր զեկուցման մեջ նշեց, որ այս տարի գյուղատնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումները կաճեն 38 տոկոսով, իսկ 1964—1965 թվականներին, ամբողջությամբ վերցրած,





ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ կներդրվեն այնքան միջոցներ, որքան ներդրվել են յոթնամյակի անցած հինգ տարում։

Հենց այս տարվանից զգալիորեն կզարգանա հացահատիկային տնտեսությունը։ Ընթացիկ տարում նախատեսված է ոռոգելի հողերում զգալիորեն ավելի շատ հացահատիկային կուլտուրաներ ցանել, որի լավ խնամքի և ագրոտեխնիկական կանոնների խստիվ կիրառման դեպքում ցորենի բերքը կարող է հասցվել հեկտարից 35—40 ցենտների։

Համագումարը խնդիր դրեց ցանքատարածությունները ավելի լավ օգտագործելու և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը խիստ բարձրացնելու շնորհիվ 1965 թվականին հացահատիկի արտադրությունը հասցնել 285 հազար տոննայի, ծխախոտինը՝ 14 հազար տոննայի, շաքարի ճակնդեղինը (գործարանային) 115 հազար տոննայի, խորդենունը՝ 14 հազար տոննայի, բանջարանոցային կուլտուրաներինը՝ 232 հազար տոննայի, կարտոֆիլինը՝ 207 հազար տոննայի և բոստանային կուլտուրաներինը՝ 56 հազար տոննայի։

Ավելի մեծ ուշադրություն է դարձվելու ջերմոցային տնտեսության զարգացմանը, այն հաշվով, որպեսզի հնարավոր լինի ամբողջ տարին բնակչությանը մատակարարել թարմ բանջարեղեն։ Այսպես, օրինակ, եթե Երևանում կառուցվի 75 հազար քառակուսի մետր տարածությամբ հիդրոպոնիկ բանջարանոցային ֆաբրիկա, որի կեսից ավելին՝ ապակու տակ, ապա ամեն տարի կարելի կլինի արտադրել մինչև 2000 տոննա բանջարեղեն։

Էլ ավելի կզարգանան ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջատար ճյուղերը՝ խաղողագործությունն ու պտղաբուծությունը։ Այդ բնագավառում պահանջվեց, որպեսզի խաղողի և պտղատու այգիների բերքատվության բարձրացման հետ մեկտեղ, առաջիկա երկու տարում գցվեն 11 հազար հեկտար նոր այգիներ, որ թույլ կտա 1965 թվականին խաղողի արտադրությունը հասցնել 230 հազար տոննայի, իսկ պտուղներինը՝ 80 հազար տոննայի։

Առաջիկայում խոշոր աշխատանք է կատարվելու անասնապահության զարգացման ասպարեզում գոյություն ունեցող թերությունները վերացնելու և դեռևս չօգտագործված ռեզերվները արդյունավետ օգտագոր-

ծելու ուղղությամբ։ Պահանջվում է ավելացնել հանրային անասունների գլխաքանակը, բարձրացնել նրանց մթերատվությունը, որպեսզի 1965 թվականին ռեսպուբլիկայում մսի արտադրությունը հասցվի 78—



ԱՅՍ ՏԱՐԻ ԵՎ ԵԿՈՂ ՏԱՐԻ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ ԵՎ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ԳՑՎԵԼՈՒ Է 6 ՀԱԶԱՐ ՀԵԿՏԱՐ ԽԱՂՈՂԻ ԵՎ 5 ՀԱԶԱՐ ՀԵԿՏԱՐ ՊՏՂԱՏՈՒ ԱՅԳԻ

80 հազար տոննայի (կենդանի քաշով), կաթինը՝ 350—360 հազար տոննայի, բրդինը՝ 4,4 հազար տոննայի և ձվինը՝ 202 միլիոն հատի։

Գյուղատնտեսական աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը աշխատանքի արտադրողականության բարձրացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և դրանց ինքնարժեքի իջեցման կարևորագույն պայմաններից մեկն է։ Կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդման մյուս պայմանը աշխատանքի ճիշտ կազմակերպումն է և վարձատրության առավել առաջադիմական սիստեմի կիրառումը։ Այդ մասին համագումարում հանգամանորեն խոսեց ընկ. Յա. Ն. Զարոբյանը։

Գյուղատնտեսության զարգացման 1964—1965 թվականների պլանի մեջ արտացոլված են գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի դիրեկտիվները։ Նախատեսված է ռեսպուբլիկայի գյուղատնտեսությանը 1964 թվականին հատկացնել 120 հազար տոննա հանքային պարարտանյութ, իսկ 1965



թվականին՝ 170 հազար տոննա պարարտանյութ, 1963 թվականի պլանով հատկացված 106 հազար տոննայի դիմաց։ Ըստ որում գրեթե երեք անգամ ավելանալու է պարարտանյութերի կիրառումը հացահատիկային կուլտուրաների համար։

Նախատեսված է էլ ավելի ուժեղացնել գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։ 1964—1965 թվականներին ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը կստանա 2.160 տրակտոր, 400 հատիկահավաք կոմբայն, 382 էքսկավատոր, 1.260 բեռնատար ավտոմեքենա և հողամշակման, ցանքի ու բերքահավաքի շատ այլ մեքենաներ։ Հացահատիկի արտադրությունն ավելացնելու համար ոռոգվող հողերում հացահատիկային կուլտուրաների ցանքերը կհասցվեն մոտ 75 հազար հեկտարի։

Նախատեսվող միջոցառումները հնարավորություն կընձեռեն 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների պետական գնումներն ավելացնել 25 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 15 տոկոսով, բամբակինը (հաշվի առնելով այն, որ ցանքատարածությունը կրճատվելու է 3,7 հազար հեկտարով)՝ 54 տոկոսով, ծխախոտինը՝ 2,3 անգամ, խաղողինը՝ 2,5 անգամ, կարտոֆիլինը՝ 4,3 անգամ, բանջարեղենինը՝ 2,1 անգամ, խաղողինը՝ 3 անգամ, մրգերինը՝ 3,7 անգամ, անասուններինը և



ՊԵՏՈՒԹՅԱՆԸ ԿՎԱՃԱՌՎԻ ԵՎ ԿՀԱՆՁՆՎԻ, ԿԵՆԴԱՆԻ ՔԱՇՈՎ ԱՆԱՍՈՒՆՆԵՐ ԵՎ ԹՌՉՈՒՆՆԵՐ



թռչուններինը՝ 16 տոկոսով, կաթինը՝ 13 տոկոսով. ձվինը՝ 36 տոկոսով, բրդինը՝ 7 տոկոսով։

Համագումարը Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմին, Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին, ռեսպուբլիկայի պարտիական ու գյուղատնտեսական բոլոր օրգաններին պարտավորեցրեց ձեռնարկել կոնկրետ միջոցներ, որոնք ապահովեն կոլտնտեսությունների ու սովխոզների, գյուղատնտեսական արտադրության զարգացման 1964—1965 թվականների պլանների անվերապահ կատարումը։




Համագումարը պահանջեց հասնել գյուղատնտեսական մթերքների արտադրության այնպիսի մակարդակի, որ 1964 թվականին պետությանը վաճառվի և հանձնվի 60 հազար տոննա և 1965 թվականին՝ 65 հազար տոննա հացահատիկ, համապատասխանաբար 110 հազար տոննա և 115 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 13 հազար տոննա և 14 հազար տոննա ծխախոտ, 10 հազար տոննա և 14 հազար տոննա եթերայուղատու կուլտուրաներ, 38 հազար տոննա և 41 հազար տոննա կենդանի քաշով անասուններ ու թռչուններ, 155 հազար տոննա և 170 հազար տոննա կաթ, 62 միլիոն և 70 միլիոն հատ ձու, 4,3 հազար տոննա և 4,5 հազար տոննա բուրդ։

Համագումարը ռեսպուբլիկայի պարտիական և սովետական օրգանների հիմնական խնդիրը համարեց գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը՝ պարարտանյութերի լայն կիրառման, ոռոգման զար-



գացման, կոմպլեքսային մեքենայացման հիման վրա և գիտության ու առաջավոր փորձի նվաճումների ներդրումը՝ գյուղատնտեսական արտադրության արագ ավելացման համար։

Պահանջվեց արմատապես բարելավել գյուղատնտեսության, հատկապես ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարումը, խորամուխ լինել նրանց տնտեսական գործունեության մեջ և, հաշվի առնելով յուրաքանչյուր տնտեսության առանձնահատկությունները, մշակել ու իրագործել կոնկրետ միջոցառումներ, որոնք ապահովեն հանրային արտադրության կազմակերպական-տնտեսական ամրապնդումը։

Ռեսպուբլիկայի բոլոր պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրվեց կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավար կադրերի ընտրության ու տեղաբաշխման լուրջ թերությունների վրա, համագումարը պահանջեց այդ պոստերում առաջ քաշել ընդունակ կազմակերպիչների՝ նախ և առաջ գյուղատնտեսության մասնագետներից, որոնք կարողանան ապահովել գյուղատնտեսության արտադրության զարգացման բարձր տեմպեր և հանրային տնտեսության շահութաբեր վարում։

Համագումարը հարկ համարեց վճռական միջոցներ ձեռնարկել բանջարեղենի ու կարտոֆիլի արտադրության զգալի ավելացման, դրանց մշակության առաջադիմական մեթոդների արմատավորման, կերի բազայի էական ամրապնդման և խաղողի ու պտղատու այգիների ընդլայնման յոթնամյա պլանի անվերապահ կատարման ուղղությամբ։

Անասնապահության ասպարեզում համագումարը գլխավոր խնդիրը համարեց գլխաքանակի հետագա ավելացումը, անասնաբուծության ցուցանիշների խիստ բարելավումը, կերի արտադրության զգալի չափով ավելացումը։

Հանձնարարվեց Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմին և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին՝ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումի որոշմանը համապատասխան կոնկրետ միջոցառումներ մշակել գյուղատնտեսության լայն քիմիացման իրագործումն ապահովելու համար։

*Առաջարկվեց համապատասխան կազմակերպու-թյուններին՝ ուշադրություն դարձնել կոլտնտեսու-թյունների ու սովխոզների ղեկավար ու մասսայական կադրերի որակավորումը սիստեմատիկաբար բարձրաց-նելու գործին, միջոցներ ձեռնարկել՝ ուժեղացնելու գյու-ղատնտեսական գիտահետազոտական ինստիտուտների և բուհերի կողմից արտադրությանը ցույց տրվող օգ-նությունը։*

*Պարտիական ու գյուղատնտեսական օրգանների, արտադրական վարչությունների, կոլտնտեսություն-ների ու սովխոզների ղեկավարների կարևորագույն խնդիրը համարվեց աշխատանքի կազմակերպման,*

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ ԿՀԱՏԿԱՑՎԻ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԵՐ




*նորմավորման և վարձատրման սիստեմի անընդհատ կատարելագործումը, որպեսզի ավելանա գյուղատըն-տեսական մթերքների արտադրությունը և իջնի դրանց ինքնարժեքը։*

*Այժմ Սովետական Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները իրենց ստեղծագործական ու-ժերը, ամբողջ եռանդն ու հմտությունը մոբիլիզացնում են հաջողությամբ կենսագործելու ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի և Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարի որոշումները, անձնվեր աշխա-տանքով արժանի ավանդ են ներդնում կոմունիզմի կառուցման մեծ գործում։*

Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ ՀԶՈՐ Է ԵՎ ԱՆՊԱՐՏԵԼԻ

*Քառասունվեց տարի է անցել այն օրվանից, երբ ստեղծվեցին Սովետական բանակը և ռազմա-ծովային նավատորմը։ Բայց այդ տարիների ընթացքում նրանք հավատարմորեն և նվիրվածությամբ են ծառայել իրենց ժողովրդին, հուսալիորեն պաշտպանել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեծ նվաճումները։ Հաղթանակների անմար փառքով են պսակված Սովետական բանակի մարտական դրոշները, իսկ սովետական մարտիկների հանուն հայրենիքի կա-տարած հերոսական սխրագործությունները ոգեշնչող օրինակ են հանդիսանում սերունդների համար։*

*Սովետական բանակը իսկական ժողովրդական բա-նակ է։ Մեզանում բանակն ու ժողովուրդը միասնական են, իրար հետ կապված են անխզելի հարազատ կապե-րով։ Մեր բանակը կոչված է պաշտպանելու աշխատա-վորության շահերը, մեր երկրի ազատությունն ու ան-կախությունը։ Սովետական բանակին սիրում ու հար-գում են ոչ միայն Սովետական Միության ժողովուրդ-ները, այլև ամբողջ աշխարհի աշխատավորությունը և պրոգրեսիվ մարդկությունը։ Դրա համար էլ Սովետա-կան զինված ուժերի տոնը համաժողովրդական տոն է։*

*Սովետական բանակը և ռազմա-ծովային նավա-տորմը ծնունդ առան 1918 թվականի փետրվարի 23-ին, ինտերվենտների և ներքին հակառևոլյուցիոն հրոսակա-խմբերի դեմ մղած կատաղի ճակատամարտերի բոցե-րի մեջ։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան ցնցեց հին աշխարհը և մարդկության զարգացման մեջ դրեց նոր դարաշրջանի՝ սոցիալիզմի, կոմունիզմի դա-րաշրջանի սկիզբը։ Ռուսաստանի բանվոր դասակարգը չքավոր գյուղացիության հետ միասին, լենինյան պար-տիայի ղեկավարությամբ, վճռականորեն իր ձեռքը վերցրեց պատմության ղեկանիվը։*

*Միջազգային իմպերիալիզմը չէր կարող հաշտվել այդ դրության հետ և ռազմական արշավանք է սկսում սովետական նորածին պետության դեմ, նպատակ ունե-նալով խեղդել սովետական իշխանությանը և վերա-կանգնել հին կարգերը։*

Սակայն, հաղթահարելով անասելի դժվարություններ ու զրկանքներ, երիտասարդ Կարմիր բանակը, երկրի բանվորների և գյուղացիների հետ միասին, 1918—1921 թվականների քաղաքացիական պատերազմում գլխովին ջախջախեց ինտերվենտներին և սպիտակ գվարդիականների վարձկան հրոսակախմբերին, ետ մղեց մեր երկրի վրա իմպերիալիստական 14 պետությունների զինված խոշոր արշավանքը և պաշտպանեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի նվաճումները, մեր հայրենիքի պատիվն ու անկախությունը։

Այդ մեծ հաղթանակի վճռական պայմանը կոմունիստական պարտիայի ղեկավարությունն էր, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։

Քաղաքացիական պատերազմից հետո, խաղաղ շինարարության տարիներին ևս իմպերիալիստական պետությունները հանգիստ չէին թողնում մեզ։ Նրանք ժամանակ առ ժամանակ զինված ճանապարհով փորձեր էին անում պարզելու մեր երկրի պաշտպանունակությունը։ 1929 թվականին նրանք այդպիսի փորձ ձեռնարկեցին չին-արևելյան երկաթուղու վրա, ապա ճապոնական ռազմամոլների ձեռքով պրովոկացիոն գործողություններ կատարեցին 1938 թվականին Խասան լճի մոտ, իսկ 1939 թվականին՝ Խալխինգոլի շրջանում։ Ամենքին հայտնի է, թե ինչպիսի ողբալի վախճան ունեցան այդ բոլոր ռազմական պրովոկացիաները։

Հաշվի չառնելով պատմության դասերը, իմպերիալիստները շարունակելով իրենց հանցավոր քաղաքականությունը, վերջիվերջո հասցրեցին երկրորդ համաշխարհային պատերազմին։ 1941 թվականի հունիսի 22-ին հիտլերյան Գերմանիան ուխտադրժորեն հարձակվեց մեր երկրի վրա, նպատակ ունենալով ոչնչացնել սովետական պետությունը և ստրկացնել մեր երկրի ժողովուրդներին։

Ֆաշիստական զավթիչները Սովետական Միության վրա շարժեցին 190 դիվիզիա, մոտ 5.000 ինքնաթիռ, ավելի քան 3.500 տանկ, 50 հազար հրանոթ և ականանետ։

Թշնամու հանկարծակի հարձակումը մեր երկիրն ու բանակը բացառիկ ծանր պայմանների մեջ դրեց։ Պատերազմի առաջին օրերին թշնամուն հաջողվեց օկուպացնել սովետական տերիտորիայի զգալի մասը և առաջանալ դեպի նրա կենսականորեն կարևոր կենտրոնները՝ Լենինգրադ, Մոսկվա, Վոլգոգրադ։ Մահացու սպառնալիք էր կախված երկրի վրա։

Այդ պայմաններում հարկավոր էր բացառիկ կայունություն և արիություն։ Պահանջվում էր երկրի և ժողովրդի բոլոր ուժերի վիթխարի լարում՝ գերմանա-ֆաշիստական հրոսակախմբերին կանգնեցնելու և նրանց ջախջախելու համար։

Բայց ծանր փորձությունները չընկճեցին սովետական զինված ուժերի մարտական ոգին, չասասանեցին ժողովրդի տոկունությունն ու անսահման հավատը իր արդար գործի հաղթանակի նկատմամբ։ Կոմունիստական պարտիայի կողմից ոգեշնչվող ու ղեկավարվող սովետական զինված ուժերը արիանում, ամրապնդվում և կոփվում էին մարտերում։ Նրանք կարողացան ոչ միայն դիմանալ հիտլերյան ռազմական մեքենայի ուժեղ հարվածներին, այլև կանգնեցրին թշնամուն, և ապա անցնելով վճռական հակահարձակման, ջախջախեցին ու պարտության մատնեցին նրան։

1941 թվականի վերջերին սովետական զինված ուժերը կարողացան Մոսկվայի տակ անցնել հակահարձակման և առաջին կործանիչ հարվածը հասցրեցին ու պարտության մատնեցին գերմանա-ֆաշիստական զավթիչներին։

Սովետական զինված ուժերի այդ հաղթանակը հանդիսացավ հայրենական մեծ պատերազմի վճռական և շրջադարձային ռազմական իրադարձությունը, որն ազդեցություն ունեցավ ֆաշիզմի դեմ զինված պայքարի հետագա ամբողջ ընթացքի վրա։ Պատերազմի ընթացքում առաջին անգամ ստրատեգիական նախաձեռնությունը խլվեց ֆաշիստական հրամանատարության ձեռքից։

Մոսկվայի տակ, սովետական հրամանատարության հմուտ ղեկավարության և ռազմիկների անօրինական հերոսության շնորհիվ, վերջնականապես թաղվեց ՍՍՌՄ-ի դեմ կայծակնային պատերազմի ֆաշիստական պլանը, հօդս ցնդեց գերմանա-ֆաշիստական բանակի անպարտելիության վերաբերյալ առասպելը։

Այդ հաղթանակի շնորհիվ զգալիորեն աճեց սովետական պետության և նրա զինված ուժերի հեղինակությունը։ Սովետական բանակը իրեն ցույց տվեց որպես միակ ռեալ ուժ, որն ընդունակ է ջախջախել մինչև այդ պարտություն չտեսած գերմանա-ֆաշիստական բանակին։

Պատերազմի հետագա ընթացքը բնութագրվում էր առավել սուր պայքարով՝ ստրատեգիական նախաձեռնության համար։ Այդ պայքարը, որն սկսվեց Մոսկվայի տակ, հսկայական թափ ստացավ 1942—1943 թ. թ. մարտական գործողությունների ընթացքում, հատկապես Վոլգոգրադի և Կուրսկի ճակատամարտերի ժամանակաշրջանում։

Հաղթանակները Վոլգոգրադի և Կուրսկի ճակատամարտերում վերջնական կրախի հասցրին գերմանա-ֆաշիստական հարձակողական ստրատեգիան։

Սովետական զինված ուժերի 1944—1945 թվականների հզոր հարձակողական օպերացիաները բոլոր ստրատեգիական ուղղություններում 1945 թվականի մայիսին ավարտվեցին Բեռլինի վրա հերոսական գրոհով և հիտլերյան Գերմանիայի անվերապահ կապիտուլյացիայով։ Իսկ մի քանի ամիս հետո փառավոր հաղթանակ տարվեց Հեռավոր Արևելքում իմպերիալիստական Ճապոնիայի դեմ։

Հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախումը պայմաններ ստեղծեց Լեհաստանում, Ռումինիայում, Բուլղարիայում, Չեխոսլովակիայում, Հարավսլավիայում, Ալբանիայում, Հունգարիայում, Չինաստանում, Հյուսիսային Վիետնամում, Հյուսիսային Կորեայում ժողովրդական իշխանության հաղթանակի համար։ Սոցիալիզմի ուղին բռնած ժողովուրդները, Սովետական զինված ուժերի հետ ձեռք-ձեռքի տված իրենց հողը մաքրում էին ֆաշիստական ստրկացնողներից։ Այդ պայքարում ստեղծվեց սոցիալիստական պետությունների զինված ուժերի մարտական զինակցությունն ու հավերժ և անխախտ բարեկամությունը։

Հայրենական մեծ պատերազմի դաժան փորձություններից Սովետական զինված ուժերը դուրս եկան ավելի ամրապնդված ու կոփված և դարձան աշխարհի ամենահզոր և անպարտելի բանակը։

Հետպատերազմյան տարիներին սովետական ժողովուրդը, ընթանալով սոցիալիստական լագերի երկրների համերաշխ ընտանիքի ավանգարդում, նոր ավելի հզոր էներգիայով ու խանդավառությամբ ձեռնարկեց խաղաղ տնտեսական և կուլտուրական շինարարությանը։ Կոմունիստական պարտիայի հանճարեղ



ղեկավարությամբ սովետական հերոս ժողովուրդը, կարճ ժամանակամիջոցում վիթխարի հաջողություններ ձեռք բերեց ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։

Մեր երկրի տնտեսական հզորության հետ զուգընթաց աճեց նաև նրա ռազմական հզորությունը։ Արդյունաբերության, գիտության ու տեխնիկայի բնագավառում հսկայական նվաճումները թույլ տվեցին ստեղծելու զինված ուժերի նոր տեսակ՝ ստրատեգիական հրթիռային զորքեր, հագեցված հրթիռամիջուկային և այլ նորագույն տեխնիկայով։

Հիմնովին վերափոխվեցին մեր ցամաքային զորքերը։ Թվական տեսակետից կրճատելու հետ միաժամանակ մեծ չափով աճեց նրանց մարտական հնարավորությունները։

Մեծ փոփոխություններ ապրեց մեր ռազմա-ծովային նավատորմը, որը ժամանակակից էտապում դարձել է հիմնականում ստորջրյա նավատորմ, զինված միջուկային լիցք ունեցող հրթիռներով ու տորպեդներով։

Շատ կարևոր զենք է դարձել ծովային հրթիռատար և հակասուզանավային ավիացիան։ Նա ընդունակ է ծովում հայտնաբերելու և ոչնչացնելու հակառակորդի ինչպես վերջրյա, այնպես էլ ընդջրյա նավերը։

Մեծապես վերափոխվել են նաև մեր հակաօդային և հակահրթիռային պաշտպանության զորքերը։ Նրանք ունեն ամեն բան, որպեսզի միշտ լինեն սոցիալիստական հայրենիքի հակամիջուկային հուսալի վահանը։ Ամբողջությամբ վերցրած մեր զինված ուժերը ներկայումս հագեցված են ամենաժամանակակից մարտական տեխնիկայով և սպառազինությամբ։

Սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի 46-րդ տարեդարձը սովետական ժողովուրդն ու նրա ռազմիկները նշում են ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների՝ կոմունիզմի կառուցման ծրագրի իրագործման համար մղվող համաժողովրդական պայքարի իրադրության մեջ։ Մեր երկրի էկոնոմիկան, գիտությունը, տեխնիկան և կուլտուրան մեծ վերելք են ապրում։ Հաջողությամբ կատարվում է ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը։ Սովետական Միության հետ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ուղիով հաստատաքայլ ընթանում են սոցիալիստական հզոր համագործակցության աշխատավորները։ Կոմու-

նիստական պարտիան և սովետական կառավարությունը հետևողականորեն վարում են լենինյան խաղաղասեր արտաքին քաղաքականություն, անդուլ կերպով պայքարում են համաշխարհային պատերազմի կանխման համար, մարդկությանը ագրեսիվ պատերազմներից փրկելու համար։ Բայց մենք երբեք չպետք է մոռանանք մեծ Լենինի այն ցուցումը, որ իմպերիալիզմը լուրջ վտանգ է բերում ամբողջ մարդկությանը, որ քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, մնում է պատերազմների սանձազերծման սպառնալիքը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, 1963 թվականի փետրվարի 27-ին արտասանած իր ճառում հայտարարեց՝ «Սովետական Միության արտաքին քաղաքականությունը հենվում է մեր տնտեսական և ռազմական հզորության ամուր հիմքի վրա, սոցիալիստական ամբողջ մեծ համագործակցության հզորության վրա։ Ոչ ոք չպետք է կասկա՛ծի, որ սոցիալիստական երկրները ընդհանուր վճռականություն ունեն խորտակելու ամեն մի ագրեսորի, հակահարված տալու դեպի սոցիալիզմ և կոմունիզմ մեր առաջընթացն արգելակելու ամեն մի փորձի»։

Իրենց փառապանծ 46-րդ տարեդարձի օրը Սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի ռազմիկները մեկ անգամ ևս կոմունիստական պարտիային և սովետական կառավարությանը հավաստիացնում են, որ զինված ուժերը, ամեն կերպ բարձրացնելով իրենց զգոնությունը և **մարտական պատրաստությունը**, որպես հայրենիքի հուսալի պահապան, աչալուրջ կերպով կանգնած են իրենց մարտական դիրքերում, միշտ պատրաստ են կատարելու պարտիայի ու կառավարության ամեն մի հրաման և ապահովելու սովետական ժողովրդի հաղթական առաջընթացը դեպի կոմունիզմ։

Ս. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Սովետական Միության հերոս, պահեստի
գեներալ-լեյտենանտ



## ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ՍԻՐԵԼԻՆ

Ագիտատոր Էմմա Ղազարյանին տեսնելը ամենօրյա պահանջ է դարձել Արտաշատի արտադրական վարչության Արարատի կոլտնտեսության աշխատավորների համար։ Նրանք գիտեն, որ ուր որ է նա կերևա, գրքերն ու թարմ թերթերը թևատակին, կգա և անպայման մի հետաքրքիր նորություն կհաղորդի, կպատմի աշխարհի անցուդարձերից, ոգևորիչ խոսք կասի։

Եվ չի ուշանում է. Ղազարյանը, գյուղական գրադարանի վարիչը, ագիտատորը։ Գալիս է ու անմիջապես նրա շուրջն են հավաքվում ունկնդիրները, ծայր է առնում կենդանի, բոլորի սիրտն ու հոգին թափանցող զրույցը՝ պարտիայի և կառավարության նոր որոշումների, միջազգային կյանքի զանազան իրադարձությունների, կոլտնտեսականների խնդիրների, նույնիսկ առօրյա հոգսերի ու անելիքների մասին։

Գոհ է ագիտատորը, իրեն լավ են լսում, խոսքը ընկալում։ Բայց նա հեշտությամբ չի հասել դրան։ 1947 թվականին ավարտելով միջնակարգ դպրոցը՝ Էմման աշխատանքի նշանակվեց Արարատի ՄՏ կայանի գրադարանում։ Հենց այդ ժամանակվանից էլ դարձավ ագիտատոր։ Ունկնդիրները կոլտնտեսականներ էին, մեծ մասամբ իր հասակի աղջիկներ ու տղաներ։ Նա հավաքում էր հարուստ ու հետաքրքիր նյութեր, տվյալներ և ապա գնում դաշտ։ Սկզբում լավ չէին լսում նրան։ Ի՞նչն էր պատճառը։ Էմման դիմեց փորձված ագիտատորներին և նրանց օգնությամբ ըմբռնեց, որ ունկնդիրների մոտ գնալիս պետք է նախօրոք լավ պատրաստվել, ընտրել այնպիսի թեմա, որը տվյալ դեպքում բոլորից ավելի հրատապ է և հուզում է մարդկանց։ Հետագա պարապմունքների ընթացքում նա սկսեց խոսակցություն բացել այն հարցերի շուրջը, որոնք մտահոգում, հուզում էին բոլորին։ Ունկնդիրների սիրտը տանող ճանապարհը գտնված էր, երիտասարդ ագիտատորը շարունակեց առաջ գնալ այդ ճանապարհով։

Այնուհետև Էմման արդեն փորձված ագիտատոր էր, և նրան էին միշտ ուղարկում դժվարին տեղամասեր,

դաշտ, թաղամաս, բնակարան: Շրջանային խորհրդակցություններում լսում էին նրա փորձը, մասնակցում նրա կազմակերպած ագիտացիոն պարապմունքներին, զրույցներին:

Մի ժամանակ երկրորդ բրիգադում գործերը վատ էին, բրիգադիրն սկսնակ աշխատող էր: Նրան հարկավոր էր օգնել: Բրիգադում գործերը կարգավորելու, նոր բրիգադիրին օգնելու նպատակով Արարատի կոլտնտեսության պարտբյուրոն ընկ. Է. Ղազարյանին նշանակեց այդ բրիգադի ագիտատոր: Նա չհրաժարվեց: Ծանոթացավ բրիգադի վիճակին: Ցածր էր աշխատանքային կարգապահությունը: Մյուս բրիգադների հետ համեմատած այստեղ հեկտարից շատ ավելի պակաս բամբակ, հացահատիկ էր ստացվում, որի համար էլ կոլտնտեսականները լքում էին բրիգադը: Ագիտատորը եղավ բրիգադի բոլոր անդամների մոտ, խոսեց նրանց հետ, համոզեց, ոգևորեց նրանց: Իսկ երբ գարունը եկավ, բրիգադիրի հետ միասին բոլորին ոտքի հանեց: Այնուհետև ամեն օր նա դաշտում էր, կոլտնտեսականների մոտ: Մեկ պարտիայի Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներն էր պարզաբանում, մեկ գյուղատնտեսական թեմայով զրույց անցկացնում, մեկ ընթերցում որևէ գիրք, լսում ունկնդիրների խոսքը, բողոքները և լուծում նրանց առաջ քաշած հարցերը:

Զրույցներից մեկի ժամանակ օղակավարուհի Ա. Արսենյանը բողոքեց, որ աշխատավոր ձեռքերը օղակների միջև ճիշտ չեն բաշխված, մեկին շատ կոլտնտեսականներ են ամրացված, մյուսին՝ քիչ: Ագիտատորի միջամտությամբ հարցը կարգավորվեց: Նրա ակտիվ մասնակցությամբ բարձրացվեց բրիգադի անդամների աշխատանքային կարգապահությունը: Եվ 20-ի փոխարեն օղակներում օրական աշխատանքի դուրս եկան 40 կոլտնտեսականներ:

Լինելով ագիտատոր՝ ընկ. Է. Ղազարյանը խորապես ապրում է բրիգադի գործերով, առաջընթացով: Պատահական չէ, որ նրան կոչում են «բրիգադիրի օգնական»:

Այժմ ոչ ոք չի կարող ժխտել, որ № 2 բրիգադի հաջողությունների մեջ ագիտատորն իր բաժինն ունի: Հիմնալի աճեց 65 հեկտար բամբակենին: Այստեղ բոլորից շուտ սկսվեց չանաքը, և բրիգադի անդամները երկրին ավելի շատ բամբակ տվեցին, քան նախատեսված էր պլանով: Բրիգադը հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հասցրեց 20 ցենտների, որը անցյալ տարվանից 3,5 ցենտներով ավելի էր:



Պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումից հետո ագիտացիոն-մասսայական աշխատանքներին նոր թափ հաղորդվեց: Ագիտացիայի գլխավոր և հիմնական նպատակը դարձավ նոր մարդու, կոմունիզմ կառուցող մարդու դաստիարակությունը: Էմման անմիջապես վերակառուցեց իր աշխատանքը: Նա բրիգադի մարդկանց կոչ արեց պայքարել կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման արժանանալու համար, ապրել կոմունիստաբար, «մեկը բոլորի, բոլորը մեկի համար» սկզբունքով:

Բամբակագործուհի Ռ. Փունդեյանը չէր հասցնում ավարտել իրեն ամրացված շարքերի երրորդ քաղհանփխրեցումը: Ագիտատորը հետաքրքրվեց և պարզեց, որ Ռոզան տնային գործերի պատճառով ուշանում է աշխատանքից, և դրանից քաղհանը ետ է մնում: Հաջորդ օրը նա կազմակերպեց աղջիկներին և միասին քաղհանեցին Ռոզային հատկացված շարքերը: Ապա բոլորը միասին օգնեցին իրենց ընկերուհուն՝ տնային գործերը կարգավորելու:

Բամբակենին հոգատար խնամք ու մշակություն է սիրում: Լավ մշակեցիր, լավ կվարձատրվես: Էմման նկատեց, որ մի քանի անփորձ աղջիկներ մշակությունը անորակ են կատարում, խաբում են իրենց և հողին: Հաջորդ օրը նա իր զրույցը նվիրեց բամբակենու մշակության ագրոտեխնիկային: Զրույցին մասնակցում էր կոլտնտեսության գյուղատնտես Լյուդվիգ Ղազարյանը: Անորակ աշխատանք կատարողները լավ դաս ստացան, նրանց խիստ քննադատեցին և՛ գյուղատնտեսը, և՛ իրենց ընկերուհիները: Բայց և միաժամանակ նրանք շատ բան սովորեցին ու այժմ փորձված կոլտնտեսականներից ետ չեն մնում:

Պարզ ու հասարակ է Էմման: Ահա թե ինչու նրան լսում են բոլորը, խորհուրդներ հարցնում, համարում իրենց մտերիմ ու սրտակից ընկերը: Առանց Էմմայի ակտիվ մասնակցության դժվար է որևէ լավ գործ նախաձեռնել ու անցկացնել:

— Առանց մեր Էմմայի ագիտացիոն աշխատանքնե-

րը դժվար է պատկերացնել,— ասում է պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար Ս. Խաչատրյանը։— Վերջերս նա ավարտեց Երևանի ակումբա-գրադարանային տեխնիկումի հեռակա բաժինը և այժմ ավելի շատ ժամանակ ունի կոլտնտեսականների մոտ լինելու, նրանց հետ ագիտացիոն զրույցներ ունենալու։ Իսկ նրա զրույցները երբեք աննպատակ չեն անցնում։

Մինչ բյուրոյի քարտուղարը պատմում է, մենք թերթում ենք ագիտատորի օրագիրը։ Բազմաթիվ հետաքրքիր նշումներ, ծրագրեր կան, ինչպես, օրինակ, կազմակերպել զրույց ՍՄԿՊ դեկտեմբերյան պլենումի, գյուղատնտեսության քիմիացման, գարնանացանի հաջող անցկացման մասին, անցկացնել բարձրաձայն ընթերցանություն, պատմել միջազգային դրության մասին, լինել ունկնդիր Ազնիվ Սարոյանի տանը նրա խնդրանքով, խնդրել բժշկին մի պարապմունք նվիրել բամբակագործուհու անձնական հիգիենային և այլն։

Իսկ երեկոյան շատերի հետ միասին դաշտից վերադառնալով՝ Էմման գրադարանում բազմաթիվ հետաքրքիր միջոցառումներ է կազմակերպում ընթերցողների համար՝ գրքերի քննարկումներ, հանդիպումներ, հարց ու պատասխանի երեկոներ, պարտիայի և կառավարության որոշումների պարզաբանում, հարկ եղած դեպքում նաև բարձրաձայն ընթերցում դրանք բոլորի համար։

Ագիտատոր Էմման իր զրույցների ընթացքում խելացիորեն օգտագործում է նաև դիտողական նյութեր՝ դիագրամաներ, լուսանկարներ։ Դրանց միջոցով նա ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանում է, թե ինչ է արվելու մեր ռեսպուբլիկայում և իրենց կոլտնտեսությունում այս և եկող տարի գյուղատնտեսության զարգացման բնագավառում։

Այսպես, ագիտատորը իր ոգեշունչ խոսքով, մասսայական-բացատրական աշխատանքով խանդավառում է կոլտնտեսային գյուղի մարդկանց, զինում նրանց կոմունիզմի գաղափարներով, մղում աշխատանքային նոր սխրանքների։

ԱՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԶՈՐ ԱՃԸ

(Թվեր և փաստեր)

Օրինական հպարտության զգացում և անսահման ուրախություն են պատճառում մեր երկրի աշխատավորներին այն վիթխարի հաջողությունները, որ նրանք ձեռք են բերել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1963 թվականի պետական պլանի կատարման գործում՝ անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները: Ահա համառոտ տեղեկություններ այդ մասին:

Արդյունաբերական արտադրանքի աճը, ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության տվյալներով, 1963 թվականին կազմել է 8,5 տոկոս։

Յոթնամյա պլանով առաջին հինգ տարվա համար նախատեսված 51 տոկոսի փոխարեն արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացել է 58 տոկոսով։ Յոթնամյակի առաջադրանքներից դուրս թողարկված է շուրջ 37 միլիարդ ռուբլու արտադրանք։

Յոթնամյակի առաջադրանքներով հինգ տարվա համար նախատեսվածից ավելի է արտադրված. հանքային պարարտանյութ՝ գրեթե 3 միլիոն տոննա, նավթ՝ 23 միլիոն տոննա, պողպատ՝ ավելի քան 14 միլիոն տոննա, գլանվածք՝ 14 միլիոն տոննա։

Նույն ժամանակամիջոցում ավելի է արտադրված սարքեր և ավտոմատացման միջոցներ՝ ավելի քան 850 միլիոն ռուբլու, մետաղահատ հաստոց՝ ավելի քան 70 հազար հատ, տրակտոր՝ 79 հազար հատ, հացահատիկի կոմբայն՝ 16 հազար, էքսկավատոր՝ 14 հազար, ավտոդող՝ 4 միլիոն հատ, հավաքովի երկաթբետոն՝ 27 միլիոն խորանարդ մետր։

Դարձյալ նույն ժամանակամիջոցում ժողովրդական սպառման ապրանքներ ավելի է արտադրված. բամբակե գործվածք՝ 1,3 միլիարդ գծամետր, բրդե գործվածք՝ 60 միլիոն մետր, վուշե գործվածք՝ 56 միլիոն մետր, կաշվե կոշիկ՝ ավելի քան 90 միլիոն զույգ, հեռուստացույց՝ 657 հազար հատ և շատ այլ արտադրանք։

Քիմիական արդյունաբերության արտադրանքը անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացավ 16 տոկոսով, սա և

գումավոր մետաղների թողարկումը՝ 9 տոկոսով, վառելիքինը և էներգետիկայինը՝ 10 տոկոսով, մետաղամշակմանն ու մեքենաշինությանը՝ 13 տոկոսով, շինանյութերինը՝ 8 տոկոսով, սննդինը՝ 5 տոկոսով և այլն։

Անցած տարի ստեղծվել են մոտ 3 հազար տիպի նոր կարևորագույն մեքենա, մեխանիզմ, ապարատ, գրեթե նույնքան սարքավորումների նոր կարևորագույն տիպեր և արտադրական պրոցեսների վերահսկման ու ավտոմատացման ավելի քան 1.200 տիպի սարք։

Նույն ժամանակամիջոցում արդյունաբերական ձեռնարկություններում յուրացվել են արտադրանքի մոտավորապես հազար տեսակներ, որոնք մեր երկրում առաջին անգամ են արտադրվում։

Անցած տարի մեծ աշխատանք կատարեցին մեր երկրի գյուտարարները և ռացիոնալիզատորները։ Միայն մեկ տարում ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է ավելի քան երկու միլիոն 750 հազար գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկություն, որը տարեկան տալիս է ավելի քան մեկ միլիարդ յոթ հարյուր միլիոն ռուբլու խնայողություն։

Մեկ տարում (1963 թ.) աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ աճել է ավելի քան հինգ տոկոսով, իսկ յոթնամյակի հինգ տարում՝ 31 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումից միայն արտապլանային խնայողությունը մեկ տարում կազմել է ավելի քան 700 միլիոն ռուբլի։

Ուրախալի է իմանալ, որ անցած տարի, ինչպես և նախորդ տարիներին Սովետական Միության արդյունաբերությունը ավելի արագ տեմպերով էր զարգանում, քան Ամերիկայի Միացյալ Նահանգներում։

Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի թողարկումը վերջին տասը տարում ՍՍՌՄ-ում աճել է 128 տոկոսով (2,3 անգամ), իսկ ԱՄՆ-ում՝ 15 տոկոսով։

Պողպատի ձուլումը բնակչության մեկ շնչի հաշվով, ՍՍՌՄ-ում աճել է 77 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում կրճատվել է 18 տոկոսով։

Էլեկտրաէներգիայի արտադրությունը, բնակչության մեկ շնչի հաշվով, ՍՍՌՄ-ում ավելացել է 160 տոկոսով (2,6 անգամ), իսկ ԱՄՆ-ում՝ մոտավորապես 66 տոկոսով։

Նավթի հանույթը, բնակչության մեկ շնչի հաշվով, ՍՍՌՄ-ում ավելացել է 3,3 անգամ, իսկ ԱՄՆ-ում մնացել է մոտավորապես 1953 թվականի մակարդակին։



Ցեմենտի արտադրությունը, դարձյալ բնակչության մեկ շնչի հաշվով, ՍՍՌՄ-ում ավելացել է 220 տոկոսով (3,2 անգամ), իսկ ԱՄՆ-ում՝ տասը տոկոսից էլ պակաս։

Ներկայումս ՍՍՌՄ-ը ԱՄՆ-ից շատ է արտադրում և աշխարհում առաջին տեղն է գրավում երկաթաքարի, ածխի, կոքսի, մեքենաշինության առանձին արտադրանքների՝ ցեմենտի, լուսամուտի ապակու, հավաքովի երկաթբետոնի, բնափայտի, աղոցանյութերի, բրդե գործվածքների, յուղի, շաքարի և մի քանի այլ մթերքների արտադրության ընդհանուր ծավալով։

Անցած տարի պողպատի ձուլումը ՍՍՌՄ-ում կազմեց ամերիկյան ձուլման 80 տոկոսը՝ 1957 թվականի 49 տոկոսի և 1953 թվականի 37 տոկոսի փոխարեն։

Ցեմենտի արտադրությունը անցած տարի ամերիկյան արտադրության համեմատությամբ կազմեց 104 տոկոս՝ 1957 թվականի 58 և 1953 թվականի 35 տոկոսի դիմաց։

Մեր երկրում ամբողջությամբ վերցրած արդյունաբերական արտադրանքի ծավալը անցած տարի կազմեց ԱՄՆ-ի արտադրանքի մոտավորապես 65 տոկոսը՝ 1957 թվականի 47 տոկոսի և 1953 թվականի 33 տոկոսի դիմաց։

Չնայած այն հանգամանքին, որ անցած տարին ծայրահեղ աննպաստ էր գյուղատնտեսության համար, բայց և այնպես որոշակի հաջողություններ ձեռք բերվեց այդ բնագավառում։ 1953 թվականի համեմատությամբ, անցյալ տարի ավելի շատ հացահատիկ գնվեց։ Եթե 1953 թվականին կոլտնտեսություններից գնվել էր 31,1 միլիոն տոննա հացահատիկ, ապա 1963 թվականին այն հասավ 44,8 միլիոն տոննայի։

Աշխատանքային մեծ հաջողությունների հասան բամբակագործները անցած տարի։ Հավաքվեց և պետությանը վաճառվեց 5,2 միլիոն տոննա բամբակ, ավելի շատ, քան սովետական բամբակագործության ամբողջ պատմության մեջ երբևիցե։

Անցյալ տարվա աշնանը ցանվել է 44,6 միլիոն հեկտար աշնանացան հացահատիկային կուլտուրա կամ գրեթե մեկ միլիոն հեկտարով ավելի, քան 1962 թվականին։ Նույն ժամանակամիջոցում 1964 թվականի գարնանացանի համար կատարվել է 114 միլիոն հեկտար ցրտահերկ, կամ 5,5 միլիոն հեկտարով ավելի, քան նախորդ տարում։

Եթե 1953 թվականին մսի արտադրությունը (սպանդանոցային

քաշով) եղել է 5,8 միլիոն տոննա, ապա 1963 թվականին այն հասել է 10,2 միլիոն տոննայի։ 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունն աճել է 7 տոկոսով։

Վերջին տասը տարում մսի, կաթի և ձվի արտադրությունը ավելացել է 1,7—1,8 անգամ։ Անասնապահական հիմնական մթերքների գնումները տասնամյակի ընթացքում ավելացել են 2—3 անգամ։

Եթե 1953 թվականին, տնտեսությունների բոլոր կատեգորիաներում արտադրվել է 36,5 միլիոն տոննա կաթ, 16,1 միլիարդ հատ ձու, ապա 1963 թվականին արտադրվել է 61,2 միլիոն տոննա կաթ և 28,8 միլիարդ ձու։

Անցած տարի գյուղատնտեսությունը ստացավ 238 հազար տրակտոր (ֆիզ. միավոր), 86 հազար բեռնատար ավտոմեքենա, 87 հազար շարահնձիչ, 77 հազար հացահատիկի, 57 հազար սիլոսի, 26 հազար եգիպտացորենի, 15 հազար ճակնդեղի և ավելի քան 5 հազար չանաքի մեքենա, 50 հազար կթի հարմարանք և այլն։

Տրանսպորտի աշխատողները նույնպես ձեռք են բերել նշանակալից հաջողություններ։ Վերջին հինգ տարում տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառությունը յոթնամյա պլանով այդ տարիների համար նախատեսված 38 տոկոսի դիմաց ավելացավ 43 տոկոսով։ Երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը աճեց 34 տոկոսով՝ 29 տոկոսի դիմաց և ծովային տրանսպորտինը՝ 112 տոկոսով՝ 68 տոկոսի դիմաց։

Անցած տարի էլեկտրաքարշի և ջերմաքարշի փոխադրված երկաթուղիների երկարությունը 1962 թվականի դիմաց ավելացավ 17 տոկոսով և անցած տարվա վերջին կազմեց 62,9 հազար կիլոմետր։

Մեծ աշխատանք է կատարվել կապիտալ շինարարության գործում։ Միայն անցյալ տարի շարք են մտել 700 նոր խոշոր պետական արդյունաբերական ձեռնարկություններ, գործարկվել են 14 նոր խոշոր քիմիական ձեռնարկություն, 100-ից ավելի քիմիայի նոր խոշոր արտադրություններ։ Կառուցված են այնպիսի գործարաններ ու արտադրամասեր, որոնք ապահովում են տարեկան 7,4 միլիոն տոննա հանքային պարարտանյութի արտադրությունը։

Անցած տարի էլեկտրակայաններում գործարկվել են ավելի քան 10 միլիոն կիլովատ նոր կարողություններ. դա ավելի է, քան գործարկված էր նախապատերազմյան հնգամյակների բոլոր տարիներին։

Նույն ժամանակամիջոցում կառուցվել են ավելի քան 7 հազար



կիլոմետր մագիստրալային գազամուղ և նավթամուղ։ Ավարտված է հռչակավոր Բուխարա—Ուրալ գազամուղի առաջին հերթի շինարարությունը և այլն։

Նշանակալից են նաև հաջողությունները ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման գործում։ Անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ, ՍՍՌՄ հանրային համախառն արտադրանքը, այսինքն՝ նյութական արտադրության բոլոր ճյուղերի ընդհանուր արտադրանքը, ավելացավ 5 տոկոսով։

Հնգամյակի ընթացքում հանրային համախառն արտադրանքը, ամբողջությամբ վերցրած, ավելացավ 39 տոկոսով։ Հինգ տարում բոլոր աշխատավորների ռեալ եկամուտները, մեկ աշխատողի հաշվով, աճեցին 20 տոկոսով։

Անցյալ տարի սպառման հանրային ֆոնդերի հաշվին բնակչությանը տրվող զանազան նպաստների, վճարումների ու արտոնությունների ծախսերը՝ կազմել են 34,5 միլիարդ ռուբլի՝ 1962 թվականի 31,9 միլիարդ ռուբլու փոխարեն։

Հանրային ֆոնդերի հաշվին 5 միլիոն սովորողներ ապահովվել են թոշակով ու հանրակացարանով, մոտ 10 միլիոն երեխաներ ընդգրկվել են մանկապարտեզներում, մանկամսուրներում և մանկահրապարակներում, ավելի քան 6 միլիոն բազմազավակ և միայնակ մայրեր ստացել են նպաստ։ Պետության հաշվին և մասամբ կոլտնտեսությունների հաշվին կենսաթոշակ է տրվել 26 միլիոն կենսաթոշակառուների։

Ինչպես նախորդ տարիներին, այնպես էլ անցյալ տարի մեր երկրում մեծ չափերով իրագործվեց բնակարանային շինարարությունը։ Միայն անցյալ տարի 11 միլիոն մարդ նոր բնակարան ստացան կամ իրենց բնակարանային պայմանները բարելավեցին։

Վերջին տասը տարում քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել է ավելի քան 17 միլիոն բնակարան, իսկ գյուղական վայրերում՝ մոտ 6 միլիոն բնակելի տուն։ Տասնամյակի ընթացքում նոր տներ են տեղափոխվել և իրենց բնակարանային պայմանները բարելավել 108 միլիոն մարդ։

Սովետական մարդիկ լավ գիտեն, որ նյութական և հոգևոր բարիքները, ստեղծվում են աշխատանքով, և որքան լավ աշխատեն, այնքան շատ նյութական բարիք կստանան։ Այդ է պատճառը, որ մեր երկրի աշխատավորները ջանք չեն խնայում 1964 թվականի առաջադրանքները գերազանց ցուցանիշներով կատարելու համար։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի 46 տարին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ.*— Ճառ Ռազմական նավատորմի համառուսաստանյան առաջին համագումարում *1917 թվականի նոյեմբերի 22-ին (դեկտեմբերի 5-ին), Երկեր, հատոր 26, էջ 415—423, Հայպետհրատ, 1951։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Նամակ բանվորներին և գյուղացիներին Կոլչակի դեմ տարած հաղթանակի առթիվ, *Երկեր, հատոր 29, էջ 686—696, Հայպետհրատ, 1951։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Հասնել միջազգային պրոբլեմների խաղաղ լուծման, մերկացնել պատերազմի հրձիգների մեքենայությունները ու մանևրները: Բարելավել պետությունների փոխհարաբերությունները, *ՍՄԿԿ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

*Ռ. ՅԱ. ՄԱԼԻՆՈՎՍԿԻ*— Ճառ արտասանած ՍՍՌՄ զինված ուժերի զինվորական ակադեմիաների շրջանավարտների ընդունելությունում 1963 թվականի հունիսի 26-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 27-ի համարում։*

ՍՍՌՄ կառավարության հուշագիրը սպառազինությունների մրցավազքը թուլացնելու և միջազգային լարվածությունը մեղմացնելու միջոցառումների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 29-ի համարում։*

## 2. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հզոր վերելքը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1963 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 24-ի համարում։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1963 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը. տպագրված «Ս.Հ.»-ի 1964 թվականի հունվարի 28-ի համարում։*



## 3. Քիմիան գյուղատնտեսության մեջ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը գյուղատնտեսության արտադրության վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանն է, *զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 9-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ*— Կատարելագործել գյուղատնտեսության ղեկավարումը, ավելի լավ օգտագործել հանքային պարարտանյութերը և ոռոգելի հողերը, *ՀԿԿ XXIII համագումարին տված հաշվետու զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 8-ի համարում։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ*— ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումի արդյունքները և ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության խնդիրները, *զեկուցում ՀԿԿ Կենտկոմի պլենումում 1964 թվականի հունվարի 28-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 29-ի համարում։*

*Խ. ՄԻՐԻՄԱՆՅԱՆ*— Երկրագործության քիմիացումն ու հողի մշակման կուլտուրան, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 15-ի համարում։*

## 4. Ռացիոնալ օգտագործել հանքային պարարտանյութերը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Քիմիան գյուղատնտեսական արտադրության զարգացման հզոր միջոց է, *ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ*— Կատարելագործել գյուղատնտեսության ղեկավարումը, ավելի լավ օգտագործել հանքային պարարտանյութերը և ոռոգելի հողերը, *ՀԿԿ XXIII համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 8-ի համարում։*

*Ե. ՄՈՎՍԻՍՅԱՆ*— Հողագործության քիմիացման մի քանի հարցեր, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 12-ի համարում։*

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 3

## 1964

*ՎՖ 08065* *Պատվեր 115* *Տիրաժ 9637*

*Հանձնված է արտադրության 30/I 1964 թ.*
*Ստորագրված է տպագրության 5/II 1964 թ.*

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.։